# ՄԱՅԻՍ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Գարունը մեր խնդության
Թևերի հետ է գալիս,
Այսոր օրն է հաղթության.
Այսոր մայի՛ս է, մայի՛ս:

Փողոցներն են զարդարվել
Դրոշներով ծփծփուն.
Մայիսն իր հետ է բերել
Հազար ծաղիկ, հազար բույր:

Գյուղ ու քաղաք տոնական
Զվարթ զգեստ են հագել,
Ու լեռներին հայկական
Նոր արև է ճառագել:

Երբ գիշերը բարձունքից
Երևանին ես նայում,
Փողոցները քաղաքի
Լույսի գետեր են թվում:

Ու նայում ես հիացքով
Քո քաղաքին հոյակերտ,
Սիրտդ լցվում է երգով,
Ու ցնծում ես նրա հետ:

Հրանոթներն են թնդում
Հանուն խաղաղ մեր կյանքի
Եվ հաղթանակն ավետում
Մեր փառապանծ բանակի:

Հրթիռները բարձրանում
Ու կապում են ծիածան,
Լույս են մութի մեջ ցանում՝
Հրթիռները լուսարձակ:

Գարունը մեր խնդության
Թևերի հետ է գալիս,
Այսոր օրն է հաղթության
Այսոր մայի՛ս է, մայի՛ս:

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

*Շրջում եք սովետական լայնարձակ երկրում, մեր մեծ հայրենիքի արևելքում և արևմուտքում, հյուսիսում և հարավում. և ամեն տեղ դուք տեսնում եք հուշասյուներ ու հուշարձաններ, հուշատախտակներ ու հուշաղբյուրներ, որ երախտագետ ժողովուրդը կանգնեցրել է Հայրենական մեծ պատերազմում զոհվածների անթառամ հիշատակին: Բազմազան ու ճոխ են այդ սլացիկ հուշասյուներն ու հուշարձանները՝ մարմարակերտ, բրոնզաձույլ, գեղաքանդակ: Նրանցից շատերի առաջ հերոսների հիշատակն անմահացնող հավերժական հուրն է կարմիր-կապույտ բոցկլտում, ինչպես Լենինգրադում ու Մոսկվայում, Սևաստոպոլում, Վոլգոգրադում ու Վլադիվոստոկում... Իսկ հայկական մեր հինավուրց լեռնաշխարհում, Հրազդանի փրփրակոծ ափերին հուշաղբյուրներն են իրենց զուլալ, քչքչան ջրերով երգում Զոյա Կոսմոդեմյանսկայայի և Օլեգ Կոշևոյի, Հունան Ավետիսյանի և Ալեքսանդր Մատրոսովի անմահությունը... Քարտաշ հայ մարդը սրբազան զգացումներով արծաթափայլ աղբյուրների ճակատին է քանդակել այդ անմոռանալի հերոսների անունները:*

*Անթիվ են ճարտարապետական կոթող-հուշասյուները, որտեղ ամեն օր տասնյակ հազարավոր մարդիկ են այցելում և միշտ թարմ ծաղիկներ դնում մարմարակերտ պատվանդաններին:*

*Սակայն կան և համեստ ու աննկատելի հուշասյուներ, որոնք մեծ ճանապարհներից ու քաղաքներից հեռու են գտնվում, ամեն օր բազմահազար այցելուներ չունեն: Այդպիսին է Ղրիմի թերակղզու հեռավոր ու մենավոր մի գյուղի մուտքին կանգնեցված հուշասյունը: Դա ոչ մարմարակերտ է, ոչ բրոնզաձույլ զարդաքանդակներ ունի, ոչ էլ հավերժական հուրն է բոցկլտում պատվանդանին: Պարզ ու համեստ և լեռնակատարի նման՝ հուշասյան վրա նույնիսկ ոչ մի անուն չի քանդակված: Դուք այնտեղ կկարդաք միայն համառոտ տառերով գրված հետևյալ տողերը.*

«Գերմանական զավթիչների դեմ
1941—1944 թվականներին
ակտիվորեն պայքարած Պրոլոմ գյուղի
կոմերիտական ընդհատակյա կազմակերպության հիշատակին»:

*Այդ պատանի հերոսների կարճատև կյանքի պատմությունը շուտով դուք կկարդաք «Պրոլոմյան հովտաշուշաններ» գրքում, որ լույս է ընծայում «Հայաստան» հրատարակչությունը: Գրքից տպագրում ենք մի հատված:*

# ՆՐԱՆՔ ԳՆԱՑԻՆ ԱՌՋԵՎԻՑ

ՍՏԵՓԱՆ ԿՈՒՐՏԻԿՅԱՆ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Հավաքի վայրը առաջարկեց Վանյա Վոլիկովը.

—Հայրս ասաց՝ մեր տանը: Եթե չեք առարկում:— Վանյան անթարթ նայում էր տղաներին: Երևում էր՝ հպարտանում էր հորով: —Հայրս ասաց՝ ապահով է մեր տունը, թող տղաները չանհանգստանան...

Նրանք մի պահ լուռ էին: Անխոս ուրախանում էին, որ Վանյայի հայրը՝ Նիկոլայ Միխայլովիչը՝ կոլտնտեսության անասնաբույժը, տուն հրավիրելով իրենց, դրանով իսկ հավանություն էր տալիս երիտասարդական ընդհատակին:

Պավլիկը գլխից վար առավ ականջակալներով գլխարկը, նորից դրեց գլխին. սա նշան էր, որ նա բան է ուզում հարցնել և հուզվում է:

—Նիկոլայ Միխայլովիչը ամե՞ն ինչ գիտի...

—Հըը,—գլխով արեց Վանյան և հանկարծ կարմըրեց: Չլինի՞ կարծում են, թե ինքը շատբերանի մեկն է... —Տղաներ, ազնիվ խոսք, հայրիկին ասացի, որովհետև նա՛ էլ... Հասկանո՞ւմ եք, նա՛ էլ...

Գուրգենը ծիծաղեց.

—Իսկ ո՞վ մեղադրեց քեզ, Վանյա... Նիկոլայ Միխայլովիչին բոլորս էլ գիտենք:—Նա դարձավ Պավլիկին. Ի՞նչ ես կարծում, ե՞րբ հավաքվենք:

—Վաղը երեկոյան:

Նրանք կանգնած էին փողոցում՝ Պավլիկենց լուսամուտի դիմաց, որտեղ թաղարների միջից վարդագույն զանգակածաղիկներ էին երևում:

Հանկարծ լսվեց ճռռոց: Աղմուկով ետ խփվեց հարևան ցանկապատի դռնակը: Տղաները լռեցին:

Փողոց նետվեց մի աղջիկ:

—Նադեժդա, Նադեժդա,—հարևան տնից լսվեց

տղամարդու խռպոտ մի ձայն,— չե՞ս լսում... ե՛տ արի...

Նադյան կանգ առավ, նայեց տան կողմը, ապա՝ տղաներին։

Ապա հպարտ գլուխը քիչ թեքած ուսին, դանդաղ մոտեցավ, կանգնեց, մատներով սանրեց մազերը.

—Բարև, տղաներ,—նրա շուրթերը հանկարծ ծամածռվեցին, ասես կռահել էր, որ իր մասին էին խոսում։—Ի՞նչ է, կարծում եք, թե ես... թե ես... ահ, ի՞նչ անտանելի եք... բոլորդ էլ...

— Ի՞նչ պատահեց քեզ, Նադյուշա, — ժպտաց Պավլիկը, բռնելով աղջկա թևից։

— Թո՛ղ,— ձգեց նա ձեռքը։ —Ես գիտեմ։ Դուք ինձ հիմա չեք հավատում... քանի որ, հայրս...— Նադյան փղձկաց, բայց, ճիգով զսպեց իրեն։ Եվ ամեն ինչ փոխվեց։—Տղաներ... ախր ես նույն ձեր Նադյուշան եմ... ես կոմերիտական եմ, ահա, տեսեք... — բաճկոնակի ներսից կարված գաղտնի գրպանից հանեց կոմերիտական տոմսը, — ահա... պահում եմ...

Գրպանից մի բան ընկավ, ասես փոքրիկ ժամացույց լիներ։

Գուրգենը գետնից վերցրեց։ Մեդալիոն էր, որտեղ դրված էր Նադյայի մահացած հոր փոքրիկ լուսանկարը։

— Առ, կկորցնես,— կամացուկ ասաց Գուրգենը։

Տղաները լռել էին. գողունի նայում էին իրար, մերթ էլ՝ Նադյային, իսկ նա մի բռան մեջ ամուր բռնել էր հոր լուսանկարը, մյուսում՝ կոմերիտական տոմսը։ Արցունքի երկու խոշոր կաթիլներ կախվել էին նրա երկար ու կեռ թարթիչներից։

— Գիտես ինչ, մի՛ գժվիր,— վերջապես խոսեց Պավլիկը։ — Քեզ վրա ոչ ոք չի կասկածում...

— Իսկ եթե ուզում ես իմանալ, մենք հենց հիմա քո մասին էինք խոսում,—անսպասելի վրա բերեց Գուրգենը։— Վաղը, ճաշից հետո, ժամը հինգին կգաս Վանյայենց տուն, հասկացա՞ր...

Նադյան նախ՝ լայն բացեց աչքերը, հետո՝ արագ սրբեց արցունքը և շիկնեց։ Ավելի գրավիչ դարձավ նրա գեղեցիկ դեմքը։ Շուրթերը նորից ցնցվեցին.

— Տղանե՜ր... ներեցեք... հիմար բան ասացի, որ դուք անտանելի եք... Հավատացեք, ես... ես...— Նադյան շուռ եկավ, վազելով անցավ տան մոտով և գնաց։

Հաջորդ օրը Վանյայենց սենյակում հավաքվեցին տասներկու տղա ու աղջիկ։ Գուրգենը, զգուշության համար, Արսենին ուղարկել էր խճուղու մոտ՝ հսկելու։ Եթե կասկածելի մի բան երևար, նա վազելով կգար, լուր կտար...

Նիկոլայ Միխայլովիչը տանը չէր։ Վանյայի մայրը. սեղանը ծածկելով թեյի պարագաներով, դռան մոտ նստած գուլպա էր գործում։ Վանյայի փոքր եղբայրը՝ Կոլյան, հպարտ, որ իրեն չեն քշում սենյակից, նստել էր մի անկյունում։

Զննայած սենյակն ընդարձակ էր և կարելի էր ազատ նստել, բոլորը խմբվել էին իրար գլխի։ Դեմքերը անհանգիստ լարված էին, կենտրոնացած։

Պավլիկը բացատրում էր, թե ինչ են վճռել, ինչ են մտածում անել։

Գլուխը քիչ խոնարհած, Գուրգենը հոնքերի տակից հերթով նայում էր ընկերներին՝ իններորդ դասարանցիներին և կարծես չէր ճանաչում նրանց լավ ծանոթ հայացքները։ Նրանք հիմա խիստ էին, ներամփոփ։

Պավլիկը վերջացրեց խոսքը.

— Ով վախենում է, թե չի կարողանա կատարել ընդհատակայինի պարտավորությունները, կարող է իսկույն ևեթ ասել։ Կարող է հրաժարվել...

Ոչ մի ձայն... Շարժվեցին, իրար նայեցին, բայց ոչ մի ձայն։

Ցոլիկը, Գոհարը, Իմաստուհին ու Սեդրակը շարժվեցին, խստացած աչքերով նայեցին իրար և ավելի պինդ տեղավորվեցին աթոռների վրա։

Անյայի կապույտ աչքերի գույնը կարծես թունդացավ։ Ավելի լրջացավ, իմաստնացավ։ Երևի, նո-







րից հիշել էր իր ուսուցչուհի լինելը. ուշադիր նայում էր նստածներին։ Հետո Պավլիկը բազմիմաստ ժպտաց։ Ժպտաց և Գուրգենը։ Տղաների ու աղջիկների դեմքերի վրա, աչքերին, շուրթերին մի արտասովոր, շատ արտասովոր ժպիտ ծավալվեց, ծավալվեց ու հալվեց... Եվ շունչ քաշեցին բոլորը։

Պավլիկն ասաց.

—Հիմա Վանյան կարևոր բան է հայտնելու։

Վանյան անհանգիստ շարժվեց, բարձրացրեց գլուխը, զննեց ընկերներին։

—Հայրս ասում էր որ մի շաբաթ առաջ Բելսկուն և Գալակտոևին տեսել է Կարասու Բազարում, գերմանական պարետատնից դուրս գալիս։ Ասում էր, որ նրանք դավաճաններ են և պետք է խիստ զգուշանալ նրանցից... Հայրս ասում էր, որ հատկապես պիտի զգուշանալ դենիկինյան սպա Գալակտոևից, Նադյայի խորթ հորից։



Վանյան ակամա նայեց Նադյային, հետո շփոթվեց, անմիջապես շրջեց հայացքը։

Նադյան պոկվեց պատից, ավելի շփոթված առաջ դրեց ոտքը։ Նա բռունցք արած ձեռքերը դեռ ամուր սեղմել էր կրծքին։

— Պավլի՛կ, Գուրգե՛ն... ընկերնե՜ր...— Նադյան օգնություն հայցողի հայացքով նայեց շուրջը։—Օյ, հիմա ես լաց կլինեմ... տղանե՜ր, աղջիկնե՜ր...— Նադյան իսկապես լաց եղավ։— Ես ուզում եմ ասել, որ դուք նորից վստահում եք ինձ, հարազատներս... Ազնիվ կոմերիտական խոսք, ես կարդարացնեմ ձեր վստահությունը...

—Նադյո՜ւշա...—Անյան մոտեցավ, գրկեց նրա ուսերը։

Նադյան կուչ եկավ, հպվեց նրա կրծքին։

—Եթե կենդանի լիներ հայրիկս...

Մի պահ նորից լռեցին։ Վանյան վեր կացավ, մոտեցավ լուսամուտին, նայեց դուրս և հանգըստացավ։ Դրսում կասկածելի, անծանոթ մարդիկ չկային։

—Ո՞վ է թեյ ուզում,—ընկերներին անսպասելի դիմեց Վանյան, և լարվածությունն անցավ։

Ուշ երեկոյան ցրվեցին բոլորը։ Սակայն, կես ժամ անց, նորից Վանյայենց տանն հավաքվեցին Պավլիկը, Գուրգենը, Գարեգինը, Անյան, Վոլոդյան, Վանյան և Պավլիկի քույրը՝ Կատյան։ Սա

«Պրոլոմ» կոմերիտական-երիտասարդական ընդհատակի շտաբն էր, որին ղեկավարելու էր կոմերիտական ընդհատակյա կոմիտեի քարտուղար ընտրված Պավլիկ Կուզմինը:

Ընդհատակյա գործունեության մի քանի հարցեր քննարկելուց հետո բոլորը ցրվեցին:

Փողոցում Անյան և Պավլիկը քայլում էին առանձին: Սկզբում չէին խոսում:

—Ահա և գործի անցանք,—ինքն իրեն ասաց Անյան և մտազբաղ ավելացրեց.—Իսկ ես կարծում էի, թե ամբողջ կյանքում ուսուցչուհի եմ լինելու, աշխատելու եմ դպրոցում...

—Անյա...—Պավլիկը բռնեց նրա ձեռքը, շրջեց իր կողմը:

—Ի՞նչ, Պավլիկ...

—Անյա, Գուրգենն ասում էր. «Բոլորիդ էլ Հայաստան, Երևան կտանեմ...Արարատը գոնե տեսնելու...» Նա երբեք չի եղել Հայաստանում:

—Պատերազմից հետո, Պավլիկ, ամեն մեկը կիրականացնի իր երազանքը:

Տուն վերադառնալով՝ Անյան վառեց լամպը, դրեց գրասեղանին և աղոտ լույսի տակ գրեց իր օրագրում.

«1942 թ. 5 մարտի. Պրոլոմ: Որոշեցինք, որ պետք է շարունակել ապրել, ինչպես վայել է մեզ: Գիշերը ես տուն էի վերադառնում Պավլիկի ուղեկցությամբ: «Անյա,—ասաց ինձնից բաժանվելիս,—ես հասկանում եմ, հեշտ չի լինելու... Դու զգույշ եղիր, լա՞վ...» Պավլիկ, սիրելիս, երբ մարդ ծնվում է ու մեծանում, պարտավոր է նախ՝ մտածել մարդավայել ապրելու մասին: Եթե զգուշությունը վախկոտություն է, որը խանգարում է այդպես ապրել, ես և դու չենք մտածի դրա մասին... մեր տղաներից և աղջիկներից ո՛չ ոք չի մտածի:

Թանկագիններս, իմ Զեփյուռ, Եվա, Նադյա, իմ Վոլոդյա, Գարեգին, Գուրգեն, այս մռայլ գիշեր ձեր լույսով է լցված իմ հոգին... Ինչքան գեղեցիկ էինք ապրում Ղրիմյան այս հեռավոր գյուղում..., մի սրտաբաց ընտանիքի նման, սիրելով, գուրգուրելով իրար: Բայց այժմ բոլորդ ավելի հարազատ եք դարձել, ավելի ջերմ, ինչպես կրծքի տակ բույն դրած առաջին սերը, իմ Պավլուշա... Չգիտեմ այս ծանր օրերին ինչո՞ւ եք ավելի սիրելի, ավելի հարազատ...Գրկում եմ ձեզ բոլորիդ ու համբուրում ջե՜րմ-ջե՜րմ... Ինչքան լա՜վն եք դուք, աղջիկներ ու տղաներ...»



# Խաղաղություն

ՀԵՆՐԻԿ ԱՐԹԵՆՅԱՆ

Իմ մայրիկի՜ համբույրն ես դու,
Իմ քույրիկի օրորոցը.
Մեր տան ճամփի աղբյուրն ես դու,
Մեր օջախի խաղաղ բոցը:

Մեր դպրոցի ճամփան ես դու
Եվ ղողանջը զվարթ զանգի,
Մեծ Մաշտոցի արձանն ես դու
Եվ արևի ժպիտն անգին:

Մեր խաղողի ողկույզն ես դու,
Արագածի սրսուռ ձյունը,
Մեր Սևանի վառ լույսն ես դու,
Ջվարթնոցի խոսող սյունը:

Մեր երկնքի կապույտն ես դու,
Ցորենի արտ՝ հասուն հասկով,
Լույսի երգիչ արտույտն ես դու,
Արագիլը՝ զարուն հսկող:

Արշալույսի հրդեհն ես դու
Եվ աղավնու մաքրությունը,
Լուսին թռչող հրթիռն ես դու,
Մեր դրոշի կարմիր գույնը:

# ՄԵԾ ԵՎ ՄՏԵՐԻՄ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆ

(Հատված)

Լ. ՎԻԳԳՈՐ, ՅԱ. ՍՈԽՈՏԻՆ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Իսկական բարեկամությունն իր օրենքներն ունի...

«Բո՛ւմ... Բո՛ւմ... Բո՛ւմ...— Վեստմինստերյան աբբայության աշտարակի վրա եղած «Մեծ Բենի» զարկերը հաշվում են ժամանակը, տարածվում հեռու, Լոնդոնով մեկ ազդարարելով, որ վրա է հասել կեսգիշերը: Բերկրալի ղողանջով այդ զարկերն արձագանքում են Գամպտոնկորտի առջևի պարտեզներով ու ցախկեռասներով պատված աղյուսե տներում, Հայդպարկի ծառապատ առանձնատներում:

Հիշեցնելով ծանր և կարիքով լի ևս մեկ օրվա ավարտման մասին, նեղլիկ փողոցի չքավորության խարխուլ ու մրոտ տներում խուլ լսվում է ժամացույցի կանչի ձայնը: Դինստրիտի գինու նկուղից լսվում է ծվծվան մի երաժշտություն: Հարևան տան բազմաթիվ բնակարաններից մեկում նամակ է գրում Ժեննի Մարքսը:

1850 թվականի մայիսյան այդ երեկոյին, երբ Մարքսը տարված աշխատում էր իր սենյակում, Ժեննին, երեխաներին քնեցնելով, մտքերի մեջ խորասուզված՝ երկար նստեց պատուհանի մոտ: Տունը միանգամայն խաղաղվեց: Լսվում էր միայն գրչածայրի ճռճռոցը և Մարքսի թերթած էջերի շրշյունը:

Առաջիկայի համար որտեղի՞ց փող ճարել: Գրել տո՞ւն՝ հարազատներին: Ոչ, նա այդ չի անի: Իսկ եթե գրի՞ Մայնի Ֆրանկֆուրտում ապրող Վեյդեմեյերին: Նա կոմունիստ է, Մարքսին կողմնակից, պատրաստվում է օգնել Կարլին, որ նա հոնորար ստանա իր աշխատություններից մեկի համար:

Եվ նա համառոտ, առանց գունազարդման նկարագրում է իրենց կյանքի մեկ օրը:

...Մառախլապատ ապրիլ: Սառը, խոնավ սենյակում նստած է մի երիտասարդ կին: Նա կերակրում է իր ձեռքերին պառկած նորածին երեխային: Կինը կամքի ուժով է միայն զսպում իր տնքոցները:

Հանկարծ բացվում է դուռը և սենյակ է ընկնում տանտիրուհին. թող բնակիչները անմիջապես վճարեն իրենց պարտքը՝ հինգ ֆունտ ստեռլինգ: Հինգ ֆունտ, երբ տանը հինգ պենս էլ չկա:

Տանտիրուհին չի ցանկանում մի րոպե անգամ ըսպասել: Նա մտադիր չէ, նա չի ուզում փափկանկատ լինել և հոգ տանել այն մարդկանց մասին, որոնցով հետաքրքրվում են ոստիկանության ջենտլմենները: Մարքսը կամ թող վճարի, կամ թող հեռանա:

Քանի որ վճարելու բան չկա, սենյակում երևում են «օրենքի երկու ներկայացուցիչ»: Սրանք կալանք են դնում գույքի վրա՝ մահճակալների, հագուստի, երեխայի օրորոցի վրա: Փոքրիկ աղջիկների դառը հեկե-



կանքների տակ խլում են ձեռքներից խաղալիքները և նույնպես մտցնում աճուրդով վաճառվող իրերի ցուցակի մեջ:

Դռների մոտ խմբվել են իրենց հաշիվներով այստեղ վազող հացավաճառը, դեղագործը, մսագործը: Մարքսը նետվում է ծանոթներից մեկի, մյուսի մոտ: Բայց մեկը չկա, որից դրամ վերցնի: Երկար չարչարանքներից հետո միայն հաջողվեց պարտքով ձեռք բերել անհրաժեշտ գումարը... Ժեննին ցած է դնում գրիչը. որքա՜ն առողջություն, ուժ են խլել Կարլից այդպիսի օրերը:

...Դուռը բացվում է, և երևում է Էնգելսը: Կարծես թե գարնանային ջերմություն է մտնում նրա հետ: Նա հարգալիր բարևում է Ժեննիին, իսկ ուշադիր աչքերը նրա դեմքին նկատում են դառնության հետքեր: Եվ նույն րոպեին, կարծես դրա համար է միայն եկել այստեղ, նա սկսում է ծանոթ էմիգրանտներից մեկի զվարճալի պատմությունը:

Մարքսն աղմուկով վեր է կենում նրան ընդառաջ.

— Օ՛, Ֆրիդրիխ: Բարև... Հիշո՞ւմ ես, ես քեզ հետ երեկոյան խոսում էի մի գրքի մասին...

— Սսս՜... երեխաները քնած են...— նախազգուշացնում է Ժեննին։

— Ներիր, թանկագինս,— Մարքսը ցածրացնում է ձայնը։— Տես, Ֆրեդ, ես այդ գրքից քաղվածք եմ արել՝ հետաքրքիր տեղեկություններ են...

Երկուսով խոնարհվում են տետրակի վրա։

Եվ նորից նրանք, ուս-ուսի տված, պայքարի մեջ են։ Նրանց գլխավոր նպատակն է վերականգնել Կոմունիստների միությունը, նորից ստեղծել բանվորների գաղտնի և լեգալ կազմակերպություններ։ Նորից, որովհետև 1848—1849 թվականներին միությունը ըստ էության ընկավ, կապերը խզված դուրս եկան, հասցեներն ու հանդիպումները՝ անհուսալի կամ ոչ պիտանի։

Եվ գնալով Մարքսը ավելի ու ավելի շատ ժամեր է անցկացնում Բրիտանական թանգարանի վերջերս բացված ընթերցարանում։ Այստեղ նրան գրավում է գրադարանը, ուր վեց հարյուր հազար հատոր կա։ Իր ընդգրկմամբ դա մարդկային մտքերի և փորձի մի ցընցող գանձարան է։

Մարքսը նայում է կատալոգները։ Ահա այստեղ կարելի է գտնել համարյա բոլոր անցյալ և ժամանակակից տնտեսագետների աշխատությունները։

Դեռ վեց տարի առաջ, Փարիզում, նա լրջորեն հետաքրքրվեց քաղաքատնտեսությամբ և այն ժամանակվանից բազմիցս է անդրադարձել դրան։ Նրա հետևություններից մի քանիսը նույնիսկ հաջողվեց տպագրել, օրինակ՝ «Նոր Հռենոսյանում»։ Բայց բուրժուական տնտեսագետներին մերկացնելու, խկությունը երևան բերելու և այդ մասին խաբված մարդկանց պատմելու համար հարկավոր է դեռ շատ աշխատել, և դժվար թե դրա համար ավելի հարմար պայմաններ լինեն, քան այն, որ ստեղծվել են այստեղ, Լոնդոնում։

Տանը Կարլը Ֆրիդրիխին ցույց է տալիս գրադարանում իր արած քաղվածքները, սեփական մտքերի ուրվագծերը։ Հուզված քայլելով սենյակում, նա ասում է, թե ինչպիսին պետք է լինի նոր գիրքը։

— Գիրքը կկոչվի «Քաղաքատնտեսության քննադատության շուրջը»։ Հնարավոր է, որ մենք ստիպված լինենք այն հրատարակել պրակներով։

Էնգելսը հետաքրքրությամբ նայում է գրառումները, ուշադիր լսում է։ Այն, ինչ մտածել է Կարլը, շատ անհրաժեշտ է։ Չէ՞ որ նրանք երկուսն էլ գտնում են, որ հարաբերությունները մարդկանց միջև որոշում է տնտեսակարգը։ Կարո՞ղ են արդյոք մանրամասնորեն չուսումնասիրել այն։ Ո՛չ հարցասիրությունից ելնելով, իհարկե։ Հարկավոր է գիտականորեն ապացուցել կապիտալիզմի կործանման անխուսափելիությունը։ Եվ միակ մարդը, որի ուժը կպատի կատարելու այդ աշխատանքը, Մարքսն է։ Էնգելսի համար դա միանգամայն անվիճելի է։

Բայց նրան գնալով ավելի ու ավելի է անհանգստացնում Մարքսի հոգնած դեմքը։ Անգլիայում անցկացրած կյանքի մի քանի ամսում նա խիստ ընկել է, ծերացել, նիհարել, քունքերին հայտնվել են առաջին սպիտակ մազերը։

Ինչպես չէ։ Ոչ միության աշխատանքը, ոչ էլ գիտական աշխատություն պատրաստելը մի պենս անգամ չեն բերում։ Ինչպե՞ս կերակրել ընտանիքը։ Ծառայությա՞ն մտնել։ Իսկ որտեղի՞ց այդ դեպքում ժամանակ գտնի գիտական աշխատանքի համար։ Եվ քանի՞ տասնյակ տարի կձգձգվի այն։ Դրա համար կբավարարի՞ կյանքը։ Ինչպե՞ս կլինեն պարտիական, կազմակերպական գործերը։

Մարքսի՝ Անգլիայում Էնգելսի հետ ժուռնալ լույս ընծայելու փորձը նույնպես անհաջող վերջացավ։ Միայն նոր պարտքեր գոյացան։

Ժեննին և նրա հավատարիմ օգնականը, աղախինն ու բարեկամուհին՝ Ելենա Դեմուտը, խնայում են որ-



քան հնարավոր է, բայց ոչ մի կերպ չեն կարողանում ծայրը ծայրին հասցնել: Մեկը մյուսի հետևից Մարքսենց իրերը տեղափոխվում են լոմբարդ:

Էմիգրանտներից ոմանք կարմանքից ուսերն են թոթվում:

— Ինչպե՞ս: Մարքսը կարիքի մե՞ջ է: Ախր նա բոլորովին վերջերս ստացավ ժառանգության իր բաժինը...

Այդ խոսակցությունները կատաղեցնում են Էնգելսին:

Ո՞ւմ փողով վենք գնվեց Բրյուսելում, ո՞ւմ փողով հեղափոխության օգտին միության անդամներն ուղարկվեցին Գերմանիա: Ի՞նչ միջոցներով էր գոյությունը պահպանում «Նոր Հռենոսյանը», երբ բուրժուա-ակցիոներները հրաժարվեցին օգնել հեղափոխական թերթին: Ո՞վ, եթե ոչ Մարքսը տվեց այդ բոլոր փողերը:

— Ով ինչ ասի-չասի, ես գոնե գիտեմ, որ եթե Մարքսը Լոնդոն եկավ առանց կոպեկի, ապա այն պատճառով, որ իր բոլոր միջոցները տվել էր հեղափոխությանը... Եվ կարմանալ կարող են կամ կրպարտիչները, կամ քաղքենիները:

Այն ժամանակ, Լոնդոնում, Էնգելսը բավական երկար գլուխ էր ջարդում, ձգտելով ելք գտնել: Տանից եկած նամակները կարծես շշնջում էին. «Առևտուրը, ահա թե որտեղ կարող ես մշտական աշխատավարձ ունենալ»: Նա այդ միտքը վանում էր իրենից, որպես անհեթեթություն. թողնել այն ամենը, ինչով ապրե՞լ ես:

Բայց շրջանը նեղացավ, որոնումները ոչինչ չտվեցին: Նա նորից վերադարձավ հորը վերաբերող մըտքին... Վերադառնալ նրա ֆիրման՝ նշանակում է մըշտական աշխատավարձ ունենալ: Եվ նա կարող էր ամեն ամիս փող ուղարկել Կարլին: Թեկուզ քիչ, բայց դա մշտական հենարան կլիներ:

Նա կարծես մտովի տեսնում է գոտեմարտի այն վիթխարի դաշտը, որը կոչվում է դասակարգային պայքար: Եվ այդ գոտեմարտում հեղափոխության ամեն մի վինվոր պետք է պատրաստ լինի կոհելու ամեն բան՝ առաջնորդին փրկելու համար: Իսկ առաջնորդը՝ Մարքսը, իր հետևից կտանի միլիոնավոր պրոլետարների, նա հեղափոխության հանճարն է: Եվ ինքը նրա ընկերն է: Զոհողություն չկա, որը չափազանց մեծ թվար նրա փրկության համար: Բայց կոհողությո՞ւն է արդյոք, եթե նա այլ կերպ վարվել չի կարող:

Եվ Էնգելսը 1850 թվականի նոյեմբերյան մի օր, ամուր սեղմելով իրեն ուղեկցող Մարքսի ձեռքը, նըստեց Մանչեստր տանող գնացքը:

Նրան որքա՞ն հարկ կլինի մնալ այնտեղ: Երեք, չորս տարի՞: Ինչ կա որ, նա կաշխատի դիմանալ: Այդ նրա պարտքն է. հեղափոխության վինվորի պարտքը, ընկերոջ պարտքը:

# ԻՄ ՀՐԹԻՌԸ

ՎՌԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ




Նկ. ՀՐԱՉՅԱ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ



# ԱՆԴՈՐՐԱԳԻՐԸ

Ռ. ՕՍԵՊՅԱՆ

Որևէ կարևոր գործի ճակատագիրը երբեմն կյանքում կախված է լինում պատահականությունից։ Պատահում է, որ ինչ-որ մանրունք պարզություն է մտցնում բարդ ու խճճված գործում։

Հենց այդպես եղավ մի անգամ սահմանի վրա։

Տագնապի ազդանշան ստացվեց, թե երկու անհայտ անձինք փորձել են խախտել պետական սահմանը։ Սահմանապահները հայտնաբերել են խախտողների հետքերը, նրանց իրերը։ Պարզվել է նաև, որ նրանք մի օր ու գիշեր թաքնվել են լքված հյուղակում, սահմանից ոչ հեռու։ Խաղողի այգուց նրանք հետևել են սահմանապահների գործողություններին։

Ուշ երեկոյան նրանք փորձել են անցնել սահմանը, բայց նկատվել են և, սահմանապահներին մոլորության մեջ գցելով, խճճել են իրենց հետքերը, անցել մեր թիկունքը։

Սահմանապահներն սկսեցին եռանդուն որոնումներ կատարել շրջակայքում։ Շները, որոնց բաց թողեցին հետքերի վրա, գնացին մինչև խճուղի, իսկ այնտեղ սկսեցին շփոթված դեսուդեն նետվել։ Պարզ էր, որ հետքը կորչում է։

Սահմանապահների պատանի բարեկամների ջոկատի հրամանատար Սեդա Խաչատրյանը վաղ առավոտյան կապավորների միջոցով հավաքեց ամբողջ ջոկատը և, սպայի ցուցումներով, ջոկատի առջև խնդիր դրեց. հետախուզել խաղողի այգին, ստուգել ամեն թուփ, ամեն անկյուն, բոլոր կիսաքանդ հյուղակները։ Նկատած ամեն ինչի մասին իսկույն զեկուցել սահմանապահներին։

Ջոկատը բաժանվեց երկու-երեք հոգուց բաղկացած խմբերի։ Երեխաները միամտորեն հավատում էին, թե սահմանախախտները պետք է որ այնտեղ լինեն և իրենք կկարողանան գտնել նրանց։

Սահմանապահներն, ընդհակառակը, լավ գիտեին, որ անհայտ անձինք, առաջին իսկ տագնապի ազդանշանի հետ, ձգտել են ծլկել հեռու և այժմ գտնվում են քաղաքում։ Հենց այնտեղ էլ պետք է որ որոնեին նրանց։ Բայց ինչպե՞ս։ Այդ հարցը հանգիստ չէր տալիս ոչ ոքի։ Դա նման կլիներ խոտի դեզի մեջ ասեղ որոնելուն։ Դրությունն անելանելի էր թվում։

Պատանի դրուժիննիկների մի խումբ՝ Կարլեն Գևորգյանը, Լևոն Սարգսյանը, Մարո Հովհաննիսյանը գործում էին «գլխավոր ուղղությամբ»։ Այդպես էր անվանել նրանց ուղղությունը ջոկատի հրամանատար Սեդան։

Շարժվելով խաղողի այգու միջով՝ նրանք մեկ առ մեկ զննեցին ամեն թուփ ու քար, նույնիսկ փոքրիկ փոսերը, որտեղ նապաստակներն էլ անկարող են թաքնվել։ Ամեն ինչ ուշադիր կերպով ստուգում էին, չէ՞ որ հրամանն հրաման է։

Մի վազի տակ նրանք հայտնաբերեցին ուտելիքի մնացորդներ՝ հացի կտորներ, երշիկի կճեպներ, պահածոյի դատարկ տուփ և գինու շիշ։ Շուրջը թափթփված էին լրագրի կտորներ, փաթեթի թղթեր։

Մարոն ուշադիր զննում էր այդ տեղը, կուզև կուզ առաջ գնալով։

— Տղանե՛ր,— կանչեց նա,— ի՞նչ եք կարծում, այս թուղթը չի՞ կարող որևէ բանով օգնել դրանց գտնելու համար,— և նա մի թղթի կտոր մեկնեց Լևոնին։

Լևոնը, ուշադիր նայելով թղթին, նույնիսկ քրտնեց։

— Այ, ի՞նչ եմ ասել։ Սա արդեն գյուտ էր։ Չէ՞ որ սա անդորրագիր է՝ ճամպրուկը պահման կամերա հանձնելու մասին։ Եթե այս անդորրագիրը սահմանախախտներինն է, նշանակում է, հնարավոր է բռնել նրանց։ Նրանք գնալու են ճամպրուկների ետևից։ Եկեք իսկույն վազ տանք սահմանապահների մոտ։

Ուղեկալի տնակի մոտ նրանք տեսան մի խումբ սահմանապահների և մոտեցան: Պատանի դրուժիննիկները տեսան մի գեներալի, որը քարտեզը ձեռքին ինչ-որ բան էր ասում շուրջը կանգնած սպաներին:

Երեխաներին տեսնելով, նա սպաներից մեկին հրամայեց իմանալ, թե ինչ են ուզում:

Կապիտանը մոտեցավ երեխաներին և հարցրեց.

— Ի՞նչ կա, երեխաներ:

Լևոնը նրան մեկնեց անդորրագիրը և ամեն ինչ պատմեց:

Կապիտանը շտապ մոտեցավ գեներալին և, ձեռքը գլխարկի շրթին տանելով, զեկուցեց երեխաներից լսածը ու մեկնեց անդորրագիրը: Գեներալը ուշադիր լսելով նրան, մոտ կանչեց երեխաներին և խնդրեց նորից մանրամասն պատմել:

Գեներալը մի քանի րոպե լուռ կանգնեց՝ ըստ երևույթին խորհելով ստեղծված դրության մասին: Ապա որոշում ընդունելով, ինչ-որ կարգադրություն արավ զինվորներին, որը երկու սպաների հետ մեքենա նստեց ու սլացավ քաղաքի կողմը:

Գեներալը մի քանի սպաների ու երեխաների հետ գնաց դեպի այն թփերը, որտեղից գտել էին անդորրագիրը:

— Հապա, երեխեք, ցույց տվեք, թե որտեղից գտաք այդ անդորրագիրը,— խնդրեց նա:

— Ա՛յ այստեղից,— միաձայն պատասխանեցին նրանք:

— Այսպես, ուրեմն ընթրել են բոլոր կանոններով: Երևում է, սիրտ առնելու համար գինի էլ են խմել,— ասաց գեներալը:

Շրջակայքը դիտելով, նա միաժամանակ լարված խորհում էր, թե սահմանախախտները կգնա՞ն արդյոք պահման կամերա՝ ճամպրուկի հետևից:

— Իսկ ո՞վ գտավ անդորրագիրը,— հարցրեց գեներալը:

— Մարոն գտավ,— ասաց Լևոնը:

— Կեցցե՛ք, երեխեք: Փոքրիկ մի թուղթ եք գտել, բայց այն մեծ օգնություն ցույց կտա մեզ,— գովեց գեներալը երեխաներին: — Իսկ հիմա եկեք գնանք նախաճաշի,— առաջարկեց նա:

Երեխաները ուզեցին հրաժարվել, բայց գեներալը պնդեց ասածը, կատակելով.

— Ինչ է, ընկեր դրուժիննիկներ, հրաժարվո՞ւմ եք գեներալի հրամանը կատարելուց: Դե, գնացինք, գնացինք: Նստեք մեքենա: Սահմանը խախտողներին դեռ չենք բռնել, և դուք իրավունք չունեք մարտադաշտը թողնելու:

Շարժական խոհանոցն արդեն տնակի մոտ էր, և զինվորները ախորժակով շիլա էին ուտում:

— Ընկեր խոհարար, կերակրեք թանկագին հյուրերին՝ օրվա հերոսներին,— հրամայեց գեներալը:

Երեխաները նախանձելի ախորժակով խժռեցին յուղալի, բայց փոքր-ինչ ծխահամ շիլան:

— Այ թե արծիվներ եք հա՜: Ինչպես տեսնում եմ, այստեղ էլ լավ եք աշխատում,— կատակում էր գեներալը, տեսնելով մաքրած ափսեները,— Հավելում պահանջե՞նք:

— Չէ՛, չէ՛, մենք արդեն կուշտ ենք: Շնորհակալություն:

— Ընկեր խոհարար, հիմա էլ թեյ տվեք: Թունդ արեք: Շաքարն էլ մի՛ խնայեք:

Նախաճաշից հետո գեներալը երկար զրուցում էր երեխաների հետ:

Ճիշտ է, նա հաճախ շեղվում էր, մերթ զեկուցում էին նրան, մերթ ինքն էր իր մոտ զեկուցելու կանչում որևէ սպայի, մերթ կարգադրություն էր անում, հեռախոսով խոսում:

Նա իր ծոցատետրում գրեց երեխաների անուն-ազգանունները և խոստացավ, որ ազատ ժամանակ ունենալու դեպքում, կայցելի նրանց տները:

Գեներալին մոտեցավ կապիտանն ու զեկուցեց.

Ընկեր գեներալ, զնդապետը քաղաքից խոսում է ձեզ հեռախոսի մոտ:

Գեներալը վերցրեց հեռախոսափողը.

— Լսում եմ ձեզ: Այդպես, այդպես: Լավ է: Գերազանց է: Կեցցե՛ք: Ուրեմն հենց ճիշտ ժամանակին: Հիմա ևեթ մեկնում եմ:

Հետո դառնալով կապիտանին հրամայեց.

— Դադարեցնել որոնումները: Սահմանը խախտողները բռնված են:— Ապա դարձավ պատանի բարեկամներին ու ասաց.

— Դե, երեխեք, դուք ձեր շնորհքը ցույց տվեցիք: Շնորհակալություն: Այդ դուք ապահովեցիք մեր այսօրվա հաջողությունը: Իսկ հիմա գնացեք տուն. չէ՞ որ շատ եք հոգնել: Ամենամոտ ժամանակներս ես անձամբ կգամ ձեզ շնորհակալություն հայտնելու, որպեսզի ամենքն իմանան, թե դուք ինչ հիանալի երեխաներ եք,— և բավականությամբ ժպտալով ավելացրեց.— Ա՛յ թե օյին բերեց անդորրագիրը սահմանախախտների գլխին, հա՜...

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ



# Ինչպես շարվել և զեկուցել տողանի ժամանակ



Պիոներական դրուժինայի և ջոկատի յուրաքանչյուր հավաք սկսվում և ավարտվում է տողանով: Տողան է լինում նաև հատուկ դեպքերում՝ երբ ջոկատավարը, դրուժինայի կամ ջոկատի խորհուրդը որևէ կարևոր նորություն է ցանկանում հաղորդել պիոներներին, ամփոփել կատարված աշխատանքների և մրցույթների արդյունքները, պատմել դրուժինայի հետագա անելիքների մասին:

Հանդիսավոր տողաններ, ի տարբերություն սովորականների, լինում են որոշակի նպատակներով՝ երբ նշվում է դրուժինայում, շրջանում, քաղաքում, մեր երկրում կամ արտասահմանում տեղի ունեցած կարևոր իրադարձություն: Ինչպես, օրինակ, Հայրենիքի համար զոհված հերոսի հիշատակը նշելու, ջոկատը անվանակոչելու դեպքում:

Հանդիսավոր տողանին պետք է մասնակցել տոնական հագուստով, իսկ սովորականին կարելի է նաև դպրոցական համազգեստով, բայց անպայման փողկապով:

Դրուժինայի տողանը սկսվում է պիոներ-շեփորահարի ազդանշանով: Մինչև ազդանշանի վերջանալը բոլոր ջոկատները շատ արագ պետք է քառանկյունու ձևով (П-տառի նման) շարվեն տողանի: Դրոշակակիրները կանգնում են հեռու, առանձին մի տեղ և, միայն ջոկատավարի հրամանով, ներս են բերում դրոշը: Ավագ ջոկատավարը և դրուժինայի խորհրդի նախագահը կանգնում են դրուժինայի առջև՝ կենտրոնում, ջոկատի խորհրդի նախագահները՝ իրենց ջոկատից երեք քայլ առաջ, իսկ օղակավարները՝ իրենց օղակի աջ թևում:

Դրուժինայի խորհրդի նախագահը հրահանգ է տալիս՝ «Դրուժինա, հավսա՛ր, զգա՛ստ: Պատրաստվել զեկուցման»: Իսկ «Ազա՛տ» հրահանգից հետո ջոկատի խորհրդի նախագահները կամ էլ խորհրդի որևէ անդամ ստուգում են, թե քանի պիոներ է մասնակցում տողանին, պարզում են բացակայության պատճառները: Ստուգումից հետո ջոկատի խորհրդի նախագահները կանգնում են իրենց տեղերում և սպասում հաջորդ հրահանգին:

Երբ բոլոր ջոկատները պատրաստ են լինում զեկուցման, դրուժինայի խորհրդի նախագահը նոր հրահանգ է տալիս՝ «Ջոկատներն անցնեն զեկուցման»: Յուրաքանչյուր ջոկատի խորհրդի նախագահ դեմքով դառնում է դեպի իր ջոկատը և ասում՝ «Ջոկատ, հավսա՛ր, զգա՛ստ», ապա շրջվում է և ամենակարճ ճանապարհով գնում դեպի դրուժինայի խորհրդի նախագահը, նրանից 3—4 քայլ հեռավորության վրա կանգնում է, պատվի է առնում և զեկուցում: Զեկույցը պետք է լինի մոտավորապես այսպես. «Դրուժինայի խորհրդի նախագահ ընկեր Սարգըսյան, Հունան Ավետիսյանի անվան ջոկատը կազմ ու պատրաստ շարված է տողանի, բացակայում են այսքանը՝ այս պատճառով: Զեկուցող՝ ջոկատի խորհրդի նախագահ Արմեն Գևորգյան»:

Դրուժինայի խորհրդի նախագահը, անհրաժեշտության դեպքում, հարցեր է տալիս, իսկ հետո պատվի է առնում և ասում՝ «Զեկույցն ընդունված է, ազատ»:

Այնուհետև զեկուցող ջոկատի խորհրդի նախագահը պատվի է առնում, շրջվում է, գնում իր ջոկատի մոտ և «Ազա՛տ» հրահանգ է տալիս:

Սովորաբար զեկույցները սկըսում են ամենաբարձր դասարանների ջոկատներից:

Ընդունելով բոլոր ջոկատների զեկույցները, դրուժինայի խորհըրդի նախագահը հրահանգ է տա-

լիս՝ «Դրուժինա, դրոշի ներքո, զգա՛ստ»: Երբ երևում է դրոշակակիրը, երկրորդ հրահանգն է տալիս՝ «Դեպի դրոշը, հավա՛ք»:

Պիոներները գլուխներն ուղղում են դեպի դրոշը և պատվի առնում: Դրոշակակիրը ասիստենտների, շեփորահարների և թմբկահարների հետ միասին անցնում են շարասյուների առջևով և կանգնում դրուժինայի կամ աջ թևում, կամ էլ կենտրոնում՝ դեմքով դեպի պիոներները: Այդ ժամանակ դրուժինայի խորհրդի նախագահը շրջվում է դեպի ավագ ջոկատավարը, պատվի է առնում և զեկուցում այսպես. «Ավագ ջոկատավար ընկեր Պողոսյան, Նելսոն Ստեփանյանի անվան դրուժինան շարված է տողանի: Զեկուցող՝ դրուժինայի խորհրդի նախագահ Գայանե Խաչատրյան»:

«Ազատ» հրահանգը ստանալուց հետո դրուժինայի խորհրդի նախագահը շրջվում է դեմքով դեպի պիոներները և ասում՝ «Ազա՛տ»:

Դրանից հետո նա հայտարարում է տողանի նպատակը և խոսքը տալիս ելույթ ունեցողին:

Վերջացնելով տողանը, դրուժինայի խորհրդի նախագահը դիմում է պիոներներին՝ «Պիոներնե՛ր, Սովետական Միության Կոմունիստական կուսակցության գործի պայքարին, եղի՛ր պատրաստ»: «Միշտ պատրաստ»,— պատասխանում են պիոներները և պատվի առնում:

Դրոշակակիրը դրոշը դուրս է բերում, իսկ հետո հրահանգ է տրվում «Ազա՛տ, ցրվե՛լ»:

## ԻՆՉՊԵՍ ՊԵՏՔ Է ԴՐՈՇԸ ԴՈՒՐՍ ՏԱՆԵԼ

Դրուժինայի դրոշը դրոշակակիրն է դուրս տանում կամ այն լավագույն պիոները, որին հանձնարարել է դրուժինայի խորհուրդը:

Առջևից գնում է դրոշակակիրը, նրա աջ և ձախ կողմերից պատվի առած գնում են ասիստենտները, ետևից՝ դրուժինայի շեփորահարներն ու թմբկահարները: Իսկ նրանցից հետո էլ գնում են ջոկատային դրոշակակիրները իրենց դրոշակներով:

## ԻՆՉՊԵՍ ԵՆ ՊԱՏՎՈ ՊԱՀԱԿ ԿԱՆԳՆՈՒՄ ԴՐՈՇԻ ՄՈՏ

Հավաքների և հանդիսավոր տոնախմբությունների ժամանակ պիոներական դրոշի մոտ պատվո պահակ են կանգնում՝ դրոշակակիրը և երկու ասիստենտներ: Նրանք անընդհատ փոփոխվում են (յուրաքանչյուր հինգ-տասը րոպեն մեկ անգամ): Դրոշի մոտ պատվո պահակ կարող են կանգնել նաև ջոկատային դրոշակակիրներն իրենց դրոշներով: Պահակների փոփոխման համար պատասխանատու է դրուժինայի դրոշակակիրը: Յուրաքանչյուր հերթափոխ մոտենում է շարքով: «Հերթափոխ, կանգնի՛ր» հրահանգով նրանք կանգնում են ծնծրակով դեպի նախորդ հերթափոխը: Նոր դրոշակակիրը բռնում է դրոշի ձողից, «հերթափոխել» հրահանգից հետո երկուսն էլ մեկ քայլ առաջ են կատարում:

«Դեպի աջ (կամ ձախ) քայլո՛վ մա՛րշ» հրահանգով հերթափոխվողները հեռանում են:

Հրահանգներն ու զեկույցները պետք է լինեն հակիրճ, բարձր, հանդարտ:




Արամի կրտսեր քույրը դաս պատրաստելիս հաճախ է դիմում եղբոր օգնությանը: Այդ պահերին Արամը լուրջ դեմք է ընդունում, ժպտում քթի տակ և մեծ մարդու հպարտությամբ սկսում է բացատրել: Որ առարկայից էլ որ դըժվարանա քույրիկը, Արամն իսկույն օգնության կհասնի: Սակայն նա առանձնապես հաճույք է ըզգում, երբ իրեն հարցնում են բուսաբանությունից: Եթե հանկարծ փորձեք Արամին հարցնել որևէ բույսի, ասենք, օրինակ, ծաղկաղամբի մասին, նա ձեզ հազար ու մի բան կպատմի դրա վերաբերյալ: Դուք կիմանաք, թե ինչպես է աճում ու բազմանում օգտավետ այդ բանջարեղենը, կլիմայական ինչպիսի պայմաններ է սիրում, ինչ քմահաճույքներ ունի:



— Տղա ջան, դու որտեղի՞ց գիտես այդքանը,— կիարցնի անծանոթը կարմացած,— ախր դասագրքերի մեջ այդպես մանրամասնորեն չի գրված:

— Իմ դասպգրքում գրված է,— կատակով կպատասխանի Արամն ու նորից մեծի նման կժպտա:

Արամի և նրա ընկերների՝ Երեվան քաղաքի տասնյակ պատանի բնասերների, երկրորդ դասագիրքը հայրենի բնությունն է: Այդ դասագրքի գունավոր էջերը նրանք հետաքրքրությամբ են կարդում Հաղթանակի կամրջի հարավում, Զանգվի աջ ափին՝ երկու հեկտար հողատարածության վրա:

«Դպրոցականների հանրապետական ագրոբիոլոգիայի կայան». այսպես է գրված այն ցուցատախտակի վրա, որի տակից ամեն օր անցուդարձ են անում դպրոցականների խմբերը:

Առանձնապես սիրով են այստեղ գալիս Պռոշյանի, Չարենցի, Նար-Դոսի, Կրուպսկայայի անվան դպրոցների սաները:

Աշխատասեր են Երևանի Կրուպսկայայի անվան դպրոցի 6-րդ «գ» դասարանցիներ Ռուզանը, Մարիետան, Աշոտիկն ու Ջիվանը: Բայց նրանց կատարածը միայն ֆիզիկական աշխատանք չէ: Կայանում նրանց փոքրիկ գիտնականներ են ասում: Եվ իրոք, գիտնականի հետաքրքրասիրություն ու հետևողականություն ունեն այս փոքրիկները: Բուսաբանջարաբուծական կաբինետի մեթոդիստ ընկեր Պերճուհի Եսայանի ղեկավարությամբ անցյալ տարի նրանք ուշագրավ փորձեր դրեցին և շատ գաղտնիքներ բացահայտեցին բադրիջանի բերքատվության վերաբերյալ:

Կարդում ես օրագրերում կատարած նրանց նշումները և իմանում, որ պատանի բնասերները անհանգիստ ապրումների և սպասումների ամիսներ են անցկացրել մինչև այն օրը, երբ Ռուզանը ուրախությամբ գրիչը վերցրեց ու գրեց. «Վերջապես այսօր ամեն ինչ պարզվեց: Կշռեցինք մեր ստացած բերքը: Մարիետան, որ բույսը մշակում էր առանց պարարտանյութերի՝ միայն ագրոտեխնիկան պաշտպանելով, քիչ բերք ստացավ: Նա այսօր լրիվ համոզվեց, որ պարարտանյութերը շատ են անհրաժեշտ բույսերի համար: Բայց Մարիետան այսօր աչքիս տխուր էր երևում: Մի՞թե քիչ բերք ստանալու պատճառով է տխրել: Չէ, Մարիետան գիտի, որ մենք փորձնական աշխատանքներ ենք կատարում և պարզաբանված գաղտնիքը բոլորիս է վերաբերում:

Ջիվանը նույնպես հաջողության չի հասել և մռութը կախել է: Նա հողը պարարտացրել է միայն ֆոսֆորով: Ամենաուրախը Աշոտիկն է, որ չորս տեսակ պարարտանյութ օգտագործելով, ամենալավ արդյունքն է ստացել:

Ցտեսություն մինչև նոր հանդիպում, ընկեր Պերճուհի: Հաջորդ գարնանը մենք նորից կգանք»:

Վաղուց արդեն եկել է Ռուզանի սպասած «հաջորդ գարունը»: Երեխաները նորից գործի են անցել: Այս անգամ նրանց ուսումնասիրության առարկան միկրոպարարտանյութերն են՝ բորը, մանգանը, ցինկը:

Պատանի բնասերների կայանում գործում է յոթ խմբակ: Այդ խմբակներում երեխաներն ուսումնասիրում են վանական պտուղների, բանջարեղենի, ծաղկատեսակների ու խոտաբույսերի աճն ու վարգացումը, թռչունների ու ճագարների բնավորությունները:

Փոքր է կայանի զբաղեցրած տարածությունը և այնքան էլ հարմարավետ չէ, բայց կայանի դիրեկտոր ընկեր Համլետ Մանուկյանը երեխաներին ուրախ լուր է հաղորդում.

— Մեզ համար նոր, ընդարձակ հողամաս են հատկացրել Քանաքեռում:

— Ուռա՜,— կանչում են երեխաներն ու ավելի ոգևորվում:

Նեղ ու անշուք են գրասենյակն ու կաբինետները, բայց լայն են

*Լուսանկարները՝ ԶԱՎԵՆ ԲՇՏԻԿՅԱՆԻ*



կայանի կապերը հանրապետության բոլոր շրջանների հետ: Այստեղից են մեթոդական օգնություն ստանում Մեղրու, Գորիսի, Սիսիանի, Ախուրյանի, Մարտունու և մնացած բոլոր շրջանների պատանի բնասերները, այստեղ են ամփոփվում նրանց լավագույն փորձերի արդյունքները և, վերջապես, այստեղ են որոշվում հաղթող այն խմբերը, որոնք ամեն տարի մեկնում են Մոսկվա՝ Ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդես: Կայանի միջոցով են միմյանց հետ կապ պահպանում մայրաքաղաքի և շրջանների բնության գաղտնիքները ուսումնասիրող պատանի հետախույզները:

Կեսօր է: Աշխատանքով տարված երեխաների մոտ հանկարծ հայտնվում է փոստատարը և նամակ հանձնում նրանց:

«Պատանի բարեկամներ,— գրում են Ղափանից,— այս տարի մենք փորձեր ենք կատարում ճակընդեղի ցանքի լավագույն ժամկետը որոշելու համար: Լսել ենք, որ անցյալ տարի դուք նույնանման փորձեր եք դրել Երևանի պայմաններում: Խնդրում ենք՝ գրեք ձեր փորձերի արդյունքների մասին, որպեսզի կարողանանք համեմատություն կատարել»:

Եվ Երևանի Ա. Խանջյանի անվան դպրոցի 6-րդ «ա» և «բ» դասարանցիները պատասխան նամակում գրում են. «Մեզ մոտ ճակընդեղի ցանքի ամենալավ ժամկետը մայիսի 21-ն է: Դա պարզել են Անահիտը, Սողոմոնը, Գաբրիելը, Գայանեն, Գոհարիկը»:

Իսկ թե ինչպես են պարզել, այդ մասին պատմում է ինքը՝ Անահիտը:

— Ճակնդեղ ցանելու երեք ժամկետ սահմանեցինք: Ցանեցինք մայիսի 14-ին, 21-ին և 28-ին: Ամենից շատ բերք ստացանք երկրորդ ցանքից:

Ահա և ամբողջ գաղտնիքը:

Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

# ՍՏՎԵՐԻԿԸ

ՎԼԱԴԻՄԻՐ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

(Հեքիաթ)

*Գարունը ուրախ-ուրախ մտավ Հրազդանի կիրճը: Դու մի ասի, այդ կիրճում, խոր անձավում վաղուց ի վեր ապրում է մի պստլիկ, թնգթրնգան ստվերիկ: Երգը լսելուն պես նա գլուխը հանեց անձավից ու հարցրեց.*

*— Այն ո՞վ է:*

*— Ես գարունն եմ:*

*— Ի՞նչ ես անում:*

*— Օ՜, այնքան շատ գործեր ունեմ: Դաշտերին կանաչ պիտի շաղեմ, ծաղիկ պիտի ցանեմ: Թիթեռնիկներին ներկելու եմ հմայիչ գույներով: Ծիտիկներին երգեր եմ սովորեցնելու, որ անհոգ թռչկոտեն ու երգեն: Իսկ դու ո՞վ ես:*

*— Ես մի անկախ ստվեր եմ, այստեղ ինձ ու ինձ ապրում եմ:*

*—Կգա՞ս հետս տանեմ:*

*— Ի՜ ի՜ ի՜ ի՜... Էլ գարուն չի՞ գալու, էլ ծաղի՞կ չի բացվելու: Ինչո՞ւ շտապել:*

*Եվ կրկին քուն մտավ:*

*Շատ էր անցել, թե քիչ, հայտնի չէ, ականջի տակ մեկն սկսեց բլբլացնել.*

*— Բիլ-բիլ, գիլ-գիլ, բիլ-բիլ, գիլ-գիլ...*

*Ստվերիկը զարթնեց, լսեց-լսեց ու սկսեց մտածել. «Ո՞վ կլինի: Եթե ասեմ անծանոթ է, հապա ինչո՞ւ է ձայնը ծանոթ»: Ու ականջը կանչեց.*

*— Այն ո՞վ է:*

*— Աղբյուրն եմ:*

*— Ո՞ւր ես գնում:*

*— Օ՜, այնքան շատ գործեր ունեմ: Ծաղիկները ծարավ են, ինձ են կանչում: Եղնիկները կուշտ արածելուց հետո իմ ջուրը պիտի խմեն: Ճամփորդներն ինձ տեսնելիս կանգ են առնում, լվացվում: Իսկ դու ո՞վ ես:*

*— Ես անկախ ստվեր եմ, այստեղ ինձ ու ինձ ապրում եմ:*

*— Կգա՞ս քեզ հետս տանեմ:*

*— Ի՜ ի՜ ի՜ ի՜... Էլի եկավ փչանը, բլբլանը: Կարծես նոր եմ լսում այդ երգը: Անցյալ տարի էլ նույնն էր ասում: Դեռ այնքա՜ն գա, այնքա՜ն կանչի... Ինչո՞ւ շտապել:*

*Ու կրկին քուն մտավ:*

Էլի շատ օրեր անցան։ Ձմեռ եկավ, հետո կրկին գարուն ու ամառ։ Մի օր էլ, ուշ երեկո էր, երբ աստղերով ծածկվեց ծովը, աստղիկը լսեց, որ մեկը երգում ու պարում է։ Գլուխը բարձրացրեց ու նայեց։ Դա մի գեղեցիկ աստղուհի էր։ Այնքան քնքուշ, այնքան լավ էր պարում, որ մեր աստղիկը հիացավ նրանով։

— Դու ո՞վ ես, — հարցրեց նա։

— Ես աստղային թատրոնի արտիստուհի եմ, — պատասխանեց աստղուհին։ — Իսկ դու ո՞վ ես։

— Ես անկախ աստղ եմ, այստեղ ծնվել, այստեղ էլ ինձ ու ինձ ապրում եմ։

— Արի քեզ հետս տանեմ աշխարհ տես։

— Աշխարհն ինչպիսի՞ն է։

— Մի տեղ սար է, մի տեղ ձոր է,
Մի տեղ հարթ է, մի տեղ կոր է,
Մի տեղ ավազ, մի տեղ ծով է,
Մի տեղ շոգ է, մի տեղ հով է։

— Ես չեմ կարող գալ, — ասաց աստղիկը, — հանկարծ սարից կընկնեմ։

— Մի՛ վախենա, — խրախուսեց աստղուհին, — հենվիր սարի կողերին ու սողա։

— Գետից չեմ կարող անցնել, կընկնեմ ջուրը, կխեղդվեմ։

— Ինչպե՞ս թե կխեղդվես. չէ՞ որ դու աստղ ես, կարող ես ջրի վրայով սահել։

— Ձե՞մ թրջվի։

— Աստղերը չեն թրջվում։

— Բա որ ծառին դիպչեմ, ճյուղերի մեջ խճճվեմ մնա՞մ։

— Իսկ դու կոտրատվիր, ծառին հարմարվիր և անցիր։

— Որ այդպես է, գալիս եմ քեզ հետ։

Աստղիկն ու աստղուհին ձեռք-ձեռքի տված գնացին, գնացին հասան Երևան։

— Օ՜, որքան մեծ քաղաք է։ Մարդիկ ինձ այստեղից չե՞ն քշի։

— Ինչո՞ւ պիտի քշեն, — պատասխանեց աստղուհին, — ճիշտ է, մարդիկ ամենից շատ արևն են հարգում, բայց աստղերին էլ չեն նեղացնում։ Հիմա նույնիսկ աստղային թատրոն են ստեղծում։

Մեկ էլ աստղիկը տեսավ, որ փողոցով անչափ մարդիկ են անցնում։

— Օհո՜, — ասաց նա, — բա որ ինձ տրորե՞ն։

— Իսկ դու մի՛ տրորվիր — բացատրեց դերասանուհին, — հենց որ մեկնումեկը փորձի քեզ տրորել, ելիր ոտին։ Կմոտենաս՝ ցատկիր վրան մայթը նեղ է՝ ելիր պատին։ Այս աշխարհում ոչ մեկը չի կարող աստղերի վրայով անցնել։

— Օհ, որքան շատ բան սովորեցի, — ասաց աստղիկը։ — Ես ինչո՞վ եմ զբաղվելու։

— Այստեղ ապրում է մի ծույլ, անբան, անգործ տղա։ Նրան ասում են՝ ալարկոտ Սամսոն։ Դարձիր նրա աստղը։ Վաղը երեկոյան, երբ արևը մայր մտնի, երբ աստղերը պոկվեն մարդկանցից ու սկսեն կամովին թափառել, կգաս այգի, կհանդիպենք։

Նրանք գիշերն անցկացրին այգում, մի ծառի տակ։ Առավոտյան աստղուհին գնաց թատրոն, Այդ օրը նրանց մոտ փորձ էր նշանակված։ Աստղիկը սպասեց, սպասեց, մեկ էլ տեսավ, որ մի տղա ալարկոտ քայլերով եկավ, հենվեց ցանկապատին ու քիթը վեր ցցած, ձեռքերը գրպանը խոթած կանգնեց։

Մի խումբ պիոներներ ուրախ-ուրախ անցնում էին։ Սամսոնին տեսնելով, կանգնեցին։

— Սամսոն, գնա՞նք ձուկ որսալու, — հարցրեց մեկը։

— Ծը՛։

— Սամսոն, գնա՞նք սունկ հավաքելու։

— Ծը՛։

— Սամսոն, ուզո՞ւմ ես շախմատ խաղանք։

— Ծը՛։

— Սամսոն, արի հեքիաթ պատմենք։

— Ծը՛։

Տղաներն սկսեցին ծիծաղել նրա վրա։

Նրանցից մեկն ասաց.

— Գրազ կգամ, այս ալարկոտին ոչ մեկը տեղից չի կարող շարժել։

— Իսկ ես նրան հիմա այստեղից կքշեմ, — ասաց մյուսը ու շեփորը մոտեցրեց շուրթերին ու սկսեց փչել։

— Էլ ինչո՞ւ գնալ պիոներական հավաքի, եթե այստեղ էլ ինձ համար նվագում են, — ասաց Սամսոնը ու տեղից չշարժվեց։

— Գուցե շալակենք, հը՞, — ասաց մյուսը։

Պիոներներից երկուսը նրան շալա՛կեցին։

— Էլ ինչո՞ւ ավելորդ ոտքերին նեղություն տալ, երբ մարդիկ պատրաստ են քեզ շալակել, — ասաց Սամսոնը։

Տղաները նրան կրկին վայր իջեցրին։

— Մեծ ճամփորդությունից հետո կարելի է նաև հանգստանալ, — ասաց Սամսոնը։

— Մի դրա՜ն նայեք, — ասաց շեփորահարը, — ծուլանում է տեղից շարժվել։ Աստղերն էլ կարող է նրա հետ ձանձրանալ։

— Ինչու պիտի ձանձրանա։ Ալարկոտի աստղերն էլ իր նման ալարկոտ կլինի։

Այս ամենը լսելով, աստղիկը սաստիկ տխրեց։ Երեկոյան, երբ արևը մայր մտավ, աստղուհին

նորից հայտնվեց այգում։ Սովերիկը ամեն ինչ պատմեց նրան։

— Տեսնո՞ւմ ես, — ասաց սովերուհին, — մարդիկ ծույլերին չեն սիրում։ Դու էլ Սամսոնի նըման ծույլ էիր ու դանդաղլոշ։ Եթե նորից ծուլություն անես, կդառնաս Սամսոնի սովերը։

— Ես այլևս այդ ծույլիկի սովերը չեմ լինի,— ասաց սովերիկը, — ազնիվ խոսք, այլևս ծուլություն չեմ անի։ Խնդրում եմ ինձ դրա մոտ չուղարկես։

— Շատ լավ։ Որ այդպես է վաղը կգնաս պիոներների պալատ։

* * *

Չորրորդ օրը սովերուհին եկավ սպասեց, սովերիկը չկար։

Երկրորդ օրը դարձյալ եկավ, դարձյալ սպասեց. սովերիկը չկար ու չկար։ «Տեսնես ո՞ւր կորավ,— մտածեց սովերուհին,—մի՞թե խռովեց ինձնից, մի՞թե էլ չի գալու»։

Երրորդ օրը կրկին եկավ։ Ծառի տակ նստած սպասում էր, մեկ էլ, ը՛հը՛, սովերիկը հայտնվեց։

— Քեզ ի՞նչ պատահեց,— հարցրեց սովերուհին, — որտե՞ղ էիր։ Ինչո՞ւ ես այդպես հոգնած։

— Օհ, էլ մի՛ հարցրնի, — պատասխանեց սովերիկը, — հենց նոր լուսնից եմ գալիս։

— Մի՞թե։

— Այո, այո։ Չե՞ս հավատում։ Սկզբում Խաղաղ օվկիանոսում լողում էի։ Այնքան խորացա, որ ափը չէր երևում։ Փոթորիկն ինձ քշեց, տարավ։ Այնտեղ ինձ մի մեծ ձուկ հանդիպեց։ Դու այդպիսի ձուկ չես տեսել։ Ես հոգնել էի։ Իհարկե, նա ինձ շալակեց։

— Ուրի՞շ։

— Մինչ այդ, մի մեծ օձ խեղդեցի։ Դու այդպիսին տեսած չես լինի։ Այն էլ ասեմ, առյուծի հետ լավ ընկերներ ենք։ Իմ բոլոր հրամանները նա կատարում է։

— Ուրի՞շ։

— Ես կարող եմ անտեսանելի դառնալ։

— Ուրի՞շ։

— Վաղը թռչելու ենք Մարս։ Սուրիկը, Վաչիկը, Տիգրանիկը հրթիռ են պատրաստում։

— Ուրի՞շ։

— Ես կարող եմ արեգակի շողերին նստել և ճանապարհորդել ուր կամենամ։

— Օհ, ինչ փչա՜ն ես։ Ախր այդ բոլորը դու չես կարող կատարել։ Չէ՞ որ դու միայն սովեր ես։

— Ես էլ եմ ուզում պիոներ լինել։ Ես էլ եմ ուզում թռչել լուսին, երազել։

— Երազե՞լ... Ա՜յ թե զտար։ Բայց հիմա դու՝ խելոք, պետանի սովերիկ ես։ Եկ գնանք միասին։

Սովերուհին ու սովերիկը ձեռք-ձեռքի տված, սովերների միջով գնացին, հասան մի մեծ շենքի, որի ճակատին սովերատառերով գրված էր. «Երևանի մանկական սովերային թատրոն»։ Ներս մտան։ Նրանց ընդունեց մի երկարամորուս բատվեր։

— Ծանոթացեք, խնդրեմ, սովերիկն է, — ասաց սովերուհին, —նա մեզ մոտ կարող է շատ լավ դերեր տանել։

— Հաաա՜, հասկանալի է։ Իսկ նա դերասանական փորձ որտե՞ղ է ձեռք բերել։

— Եղել է պիոներների պալատում։

— Ուրեմն՝ շրջել է լուսնի վրա, անտառում շների հետ մանե է եկել։ Մի խոսքով, բեմական կյանքին ծանոթ է։

Ու հանձնարարեց սովերիկին փորձեր կատարել։

Սովերիկը հիշեց Սամսոնին ու կատարեց նրա դերը։ Նա այնքան բնական, այնքան լավ կատարեց, որ մորուքավորը հիացավ։

— Դուք ընդունված եք, — ասաց նա, — վաղվանից կարող եք խաղալ մեր թատրոնում։

* * *

Ո՞վ չի եղել սովերային թատրոնում։ Այնտեղ սովերուհին ու սովերիկը ամեն շաբաթ ներկայացումներ են տալիս։ Նրանք հիանալի են խաղում։ Նույնիսկ մեծերն են նրանցով հիանում։ Եթե դուք էլ գնաք, չմոռանաք ծափահարել։

Ռ. ՌՈՒԲԵՆ ՂԵՎՈՆԴՅԱՆԻ



# ՊԱՏՄՎԱԾՔ ԽՆԿՈ-ԱՊՈՐ ԵՎ ԱՅՆ ՄԱՍԻՆ, ԹԵ

ԳՈՒՐԳԵՆ ՄԱՀԱՐԻ

Խնկո-Ապորը դուք բոլորդ գիտեք: Ո՞վ չի կարդացել նրա «Նապաստակի տունը», «Թռի-վռի մի ճպուռը», «Փըշկո-Նռնոն» ու էլի նրա շատ համով-հոտով առակները: Երբ ես փոքր էի ու սովորում էի դպրոցում, «Լուսաբեր» դասագրքում փնտրում ու գտնում էի նրա անունը և կարդում, անգիր էի անում նրա առակները դասից դուրս, ինձ համար.

Գյուղացին իր բոստանում
Գարնանը սերմ էր ցանում:
Արջը եկավ.— Բարև քեզ,
Ի՞նչ ես անում քեզ ու քեզ...

Այն ժամանակ նա ճանաչված էր որպես Աթաբեկ Խնկոյան:

Տարիներ անցան, ես մեծացա, սկսեցի բանաստեղծություններ, պատմվածքներ գրել ու տպել: Ուսանում էի Երևանի համալսարանում ու մի անգամ լսեցի, որ Աթաբեկ Խնկոյանը աշխատում է... որտե՞ղ, ի՞նչ եք կարծում. «Մաճկալ» թերթի խմբագրատանը:

Առանց ժամանակ կորցնելու քայլեցի դեպի «Մաճկալի» խմբագրատուն, ծանոթանալու կամ գոնե տեսնելու համար իմ մանկական տարիների սիրած գրողին:

«Մաճկալի» խմբագրատունը ասածդ մի սենյակ էր ընդամենը: Ես ներս մտա, մոտեցա առաջին սեղանի մոտ նստած մի երիտասարդ աշխատողի և ուրիշներին անլսելի ձայնով հարցրի.

— Աթաբեկ Խնկոյանը ձեզ մո՞տ է աշխատում...

— Մեզ մոտ Աթաբեկ Խնկոյան չկա,— ասաց երիտասարդը բարձրաձայն, բոլորին լսելի ձայնով:

— Էդ ո՞վ ասաց, որ չկա, բա ես ո՞վ եմ,— լսվեց մի խանձված ձայն հանդիպակաց սեղանից,— արի, բալա ջան, ի՞նչ կա...

Բոլորը ծիծաղեցին, իսկ երիտասարդ աշխատակիցը բողոքեց.

— Ախր դուք... Խնկո-Ապերն եք...

— Ի՞նչ անենք, Աթաբեկ Խնկոյան էի, դառա Խնկո-Ապեր, շատ որ խոսեք՝ կդառնամ Աթո-բեռի, իմ քեֆը չի՞... ի՞նչ կա. բալա ջան,— նորից դարձավ ինձ,— մոտ արի...

Միջակարճահասակ, կարճ խուզած, ալեխառն մազերով, մի քիչ կախ բեղերով և տխուր աչքերով մի մարդ էր Խնկո-Ապերը. զգեստները ճիշտ է, կարկատան չունեին, բայց հնամաշ էին: Նա ավելի շատ հիշեցնում էր ետ ընկած գյուղական ուսուցչի, քան գրողի: Մի խոսքով, Խնկո-Ապեր էր, որ կար...

Մենք ծանոթացանք և մի րոպե ինձ թվաց, որ ես այս մարդու հետ վաղուց եմ ծանոթ: Այո, մարդամոտ մարդ էր Խնկո-Ապերը, պարզ ու հասարակ և դժվար չէր հավատալ, որ նա է գրել.

Սով էր, սով էր Մկստան...

Բանն այն է, որ մկները կատվի կոտորածից փրկվելու համար մի ելք են գտնում. կատվի վզից զանգ կախել, որ երբ նա երևա Մկստանում, մկները լսեն զանգի ձայնը և պահեն իրենց գլուխը խոր բներում, մինչև վտանգն անցնի: Բայց հարց է ծագում. զանգը կա, կատվի վիզը կա, ո՞վ պիտի կախի զանգը կատվի վզից. այդ քաջն է, որ չկա: Նախագահը սրան է առաջարկում, նրան... անօգուտ գործ. բոլորն էլ մի-մի պատրվակով հրաժարվում են: Վերջապես մկներից մեկն առաջարկում է, որ ինքը, նախագահը բարի լինի, մի գործ անի, զանգը կախի կատվի վզից: Այստեղ է, որ նախագահը աչքը փակում է և բերանը բացում.

Լռե՛ք, հանդուգն,
Կոտորվե՛ք դուք,
Վախկոտներիդ ես թաղեմ,
Ճա՞ռ ասեմ, թե՞ զանգ կախեմ...

Ես սեղմեցի մեծ առակագրի ձեռքը՝ մտքով փոխադրված նրա ստեղծած առակների կախարդական աշխարհը:

Խնկո-Ապոր հետ մենք մտերմացանք: Հաճախ հանդիպում էինք Աբովյանի վրա և քայլելով վեր-վար, խոսում էինք դեսից-դենից: Այսպես





# ԻՆՉՊԵՍ ԵՍ ՓՈՐՁԵՑԻ ԱՌԱԿԱԳԻՐ ԴԱՌՆԱԼ

Նկ. ՌՈՒԲԵՆ ԱՅՎԱԶՅԱՆԻ

էլ մի անգամ, երբ մենք դուրս ելանք դեմ-դիմաց, նա նայեց ինձ ոտից գլուխ, բեղերի տակ ժպտաց և ասաց.

— Մի-երկու բանաստեղծություն ես գրել ու քայլում ես մազերդ քամուն տված, ոնց որ աշխարհը դրած գրպանումդ... Տղամա՞րդ ես, մի առակ գրի, որ երեխեքը կարդան, հասկանան և ուրախանան...

— Ինչ մի դժվար բան է ո՞ր,— կատակի տվի ես.

Թռի-վռի մի ճպուռ,
Ողջ ամառը շուռ ու մուռ...

— Հա, է՛, հա,— ասաց նա ծիծաղելով և բռնելով թևս,— մի էդպիսի բան գրի, ասեմ՝ ապրես...

Մենք մի քիչ խոսելուց հետո բաժանվեցինք: Տուն վերադառնալիս մտածում էի մի բանի մասին. նստել գրել մի առակ, մի այնպիսի առակ, որ Խնկո-Ապերը կարդա և ասի՝ ապրես:

Ու նստեցի: Ու գրեցի: Վերնագիրը դրի՝ «Սարդերն ու ճանճերը».

Սարդերը մի օր մի ժողով բացին,
Մի ժողով բացին, նստեցին, լացին.
— Աշխարհն անզգամ ու չար է դառել,
Այս գիշեր բազում ճանճեր են սատկել.
Ախ, այդ չար թամին,
Ճանճի թշնամին,
Տանք մի վերջնագիր
Այդ անզգամին...
— Հանուն ճանճերի սրբազան դատի,
Հանուն սարդության և արդարության...

— Միտքդ հասկացա,— ընդհատեց Խնկո-Ապերը, չթողնելով, որ ես վերջացնեմ:— Ասենք թե սարդը լավ ես գտել. քամին էլ, ասենք՝ ոչինչ... Իսկ ճա՞նճը... երեխաներն իրենք են որսում ճանճերին ու փետում թևերը, ոչնչացնում: Ճանճերի մահը երեխաներին ցավ չի պատճառի, չէ... երեխաներին չես խաբի... Էնպես որ առակդ պինդ տեղ պահիր, թե չէ կընկնի երեխաների ձեռքը, կկարդան ու կծիծաղեն, ոչ թե առակի, այլ՝ գրողի վրա...

Ես քրտնեցի, զգալով, որ ճիշտ է դատում Մեծ առակագիրը, ինչպե՞ս ես չեմ մտածել այսքան տարրական բան:

Մյուս անգամ ես ներկայացա Խնկո-Ապորը նոր «գործով»: Նա գուշակեց երկի իմ աշխույժ տրամադրությունից.

— Կարդա՛, մի կարդա տեսնենք ի՞նչ ես հորինել...

Ես հինգ մատներով մազերս սանրեցի դեպի վեր, աչքս փակեցի ու բերանս բացի.

ԹՈՒԹԱԿ

Թութակ, թութակ, թռչուն ես,
Փակ վանդակում ննջում ես,
Իսկ թե ներս գա Միրանը,
Ասի՝ լավն էր ծիրանը,
Կարծազանքես—ծիրանը,
Ասի՝ լավ է, կասես՝ լավ է,
Ասի՝ ցավ է, կասես՝ ցավ է,
Ղազար-Ղազար,
Գազար-Գազար...
Էսպես էլ շատ մարդիկ կան,
Խելքով՝ անճար,
Լեզվով՝ ճարտար,
Ինչ որ լսեն՝ կրկնում են,
Ու հանույթից փքվում են...

— Լավա՞վն է,— ծգեց Խնկո-Ապերը՝ վերցնելով ձեռքիցս գրածս, բթամատով ու ցուցամատով շոշափելով թուղթը, կարծես ոչ թե գրածիս, այլ թղթի որակը որոշելու համար,— միայն թե... ո՞նց ասեմ... թութակի մասին կարելի էր ավելի լավ բան գրել... Շարունակիր, շարունակիր, տեսնենք ի՞նչ դուրս կգա...

Ես չշարունակեցի և ոչ մի բան դուրս չեկավ: Ես չկարողացա գրել մի այնպիսի առակ, որ Խնկո-Ապերն ինձ ասեր՝ ապրես: Ես հասկացա, որ երեխաների համար գրելն ավելի դժվար է, քան մեծերի, և որ մեծերին կարելի է խաբել, իսկ երեխաներին՝ երբեք:



# ՀԵՏԱՔՐՔՐԱՍԵՐԻ ԱԿՆՈՑ

ԻՆՉՈ՞Ւ ԵՐԲ՞ ՈՐՏԵ՞Ղ

ԻՆՉՈ՞Ւ

ԻՆՉՈ՞Ւ ԵՐԲ՞ ՈՐՏԵ՞Ղ

## ԾԱՂԿԵ ԺԱՄԱՑՈՒՅՑ

*Ավելի քան երկու հարյուր տարի առաջ շվեդական փոքրիկ Ուպսալե քաղաքում պատրաստվեց ծաղկե ժամացույց: Այն պատրաստելու գաղափարը պատկանում էր հայտնի բուսաբան Կարլ Լիննեյին: Լիննեյը գիտեր, որ տարբեր բույսեր տարբեր կերպ են հարմարվել ցերեկվա և գիշերվա հերթափոխությանը: Ոմանք արթնանում են, իրենց ծաղկեպսակները բացելով առավոտյան, մյուսները՝ մայրամուտին, ոմանք սիրում են արևափայլը, մյուսներն իրենց լավ են զգում ստվերում:*

*Ծաղկե ժամացույցն իր աշխատանքը սկսում էր վաղ լուսաբացին և ավարտում էր կեսգիշերին: Առավոտյան ժամը 3—5-ին առաջինը բացվում էին այծամորուքի ալ կարմիր ծաղիկները, իսկ երբ հին քաղաքապետարանի կուրանտները գիշերային մթության մեջ խփում էին տասներկու անգամ, վերջինը փակվում էին «Գիշերվա թագուհի» կակտուսի հրաշալի կակտուսի հրակայական, ներսից սպիտակ, իսկ դրսից դարչնագույն ծաղիկները:*

Ահավոր տեսք ունի Տաջիկըստանի Ռավատ սարը: Ամբողջությամբ ճեղքերով և առուներով պատված, նա հրաբուխի նման շարունակ ծխում է: Սակայն այդ «հրաբուխի» ընդերքում ոչ թե շիկացած լավա է, այլ հրդեհ, որը 2000 տարի է արդեն, ինչ այրվում է:

Ինչի՞ց է սկսվել այդ հրդեհը, դժվար է ասել: Թերևս, նախնադարյան մարդը քարայրում խարույկ է վառել, և դյուրավառ քարածուխի պատերը բռնկվել և այրվում են մինչև այսօր: Հրդեհված տարածությունը շատ մեծ է՝ 25 կմ. երկարություն և 1 կմ. լայնություն: Չնայած այդ կորուստներին, այստեղ մեծ քանակությամբ բարձրորակ քարածուխի պաշարներ կան: Ռավատի հրդեհը ոչ միայն չի նվազում, այլ հակառակը, հետզհետե ուժեղանում է: Անձրևաջրերը և ստորերկրյա ջրերը շարունակ լվանալով այդ սարը, ավելի հեշտացնում են օդի թափանցումը դեպի կրակարանը: Երկրաբանների կարծիքով, հրդեհը հանգցնել գործնականորեն հնարավոր չէ:



## ՀՐԴԵՀ, ՈՐԸ ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է 2000 ՏԱՐԻ

## ԱՄԵՆԱԱՂԻ

*Մեռյալ ծովը գտնվում է Պաղեստինում: Իրականում դա նույնիսկ ծով չէ, այլ լիճ, միայն չափազանց աղի ջրով, գրեթե ութ անգամ ավելի աղի, քան օվկիանոսի ջուրն է:*

*Մի ճանապարհորդ գրում է. «...Եթե մինչև ծնկները մտնում ես ջուրը, դժվար է ոտքերը շարժել. այնքան որ ջուրը ծանր է. սուզվել կամ լողալ այդ ջրում սովորական վիճակում, անհնար է. ջրի մակերեսի վրայով լողում ես ինչպես խցան: Մի ժամանակ կայսր Տիտոսը, որը մ. թ. ա. 70-ական թվականներին գրավել էր Հրեաստանը, հետաքրքրությունից դրդված հրամայեց շղթայակապ ստրուկներին ջուրը գցել, բայց նրանք չսուզվեցին»:*

*«Դա ճիշտ է,— հաստատում է մեկ ուրիշ ճանապարհորդ, ավստրիացի դոկտոր Շրետտերը,— ջուրը ձեզ պահում է իր երեսին: Կարելի է, օրինակ, ջրի վրա*

## ՈՐՔԱ՞Ն ԱՂ ԿԱ ՋՐՈՒՄ

Գիտնականները հաշվել են, որ մեկ խոր. մղոն ջրում կա 166.000.000 տ. աղ, իսկ բոլոր օվկիանոսներում և ծովերում պարունակված աղը հավասար է 50.000 000 000 000 000 տոննայի: Դա տասնչորս անգամ մեծ է ամբողջ Եվրոպայի ծավալից, Ալպյան, Պիրենեյան և մյուս լեռնաշղթաների հետ:

Եթե հնարավոր լիներ օվկիանոսների և ծովերի ջրերում լուծված աղը հավասարաչափ բաշխել մեր մոլորակի մակերևույթի վրա, ապա երկրագունդը կծածկվեր աղի 45 մետրանոց համատարած շերտով:

պառկած կարդալ. մի ձեռքում պահած գիրքը, իսկ մյուսում՝ հովանոցը»:



Մեռյալ ծովում լուծված նատրիումը, մագնեզիումը և բրոմը այնքան շատ են, որ կարող են հարյուր տարի բավարարել համաշխարհային արդյունաբերության պահանջները:

Իր արտակարգ աղիությամբ Մեռյալ ծովը պարտական է չորային կլիմային և խիստ գոլորշիացմանը: Տեղումները շատ քիչ են լինում, իսկ կիզիչ արևը կլոր տարին գոլորշիացնում է այդ աղի ծովի տաք ջրերը:



## ՈՐՍՈՐԴ ՄԱԳՆԻՏԱՖՈՆԸ

Հունգարիայի արևմտյան շրջաններում կզաքիսները արագ բազմանալով, ընտանի թռչունների համար կատարյալ չարիք հանդիսացան: Կզաքիսների որսը չափազանց դժվար է, այդ գիշատիչը շատ նուրբ լսողություն ունի: Երկար փորձերից հետո հունգարացի որսորդները կզաքիս որսալու հնարը գտան: Նրանք սկսեցին որսալ մագնիտաֆոնի օգնությամբ, որով ձայնագրել էին դաշտամկների



ծվծվոցը: Տեխնիկայի շնորհիվ կզաքիսները պարտվեցին:

## ԱՄԵՆԱԿԱՐԵՎՈՐ ԾԱՌԸ

Տանզանիայում աճում է մի բաոբաբ, որի բնի շրջագիծը քառասուն մետրից ավելի է: Բայց բաոբաբը միայն իր մեծությամբ չէ, որ աչքի է ընկնում: Աֆրիկյան ժողովուրդները անհիշելի ժամանակներից խոնարհվում են այդ ծառի առաջ: Եվ դա զարմանալի չէ: Բաոբաբը սնում, խմեցնում և հագցնում է մարդկանց:

Սովի տարիներին բաոբաբը աֆրիկացիների սննդի հիմնական աղբյուրն է: Նրա պտուղները համեղ համ ունեն և օգտագործելի են ինչպես հում, այնպես էլ եփած վիճակում: Պետքական են նաև բաոբաբի սերմերը: Նրանք փոխարինում են սուրճին: Սակայն Զամբեզիայում սերմերի օգտագործումը արգելված է սովորությամբ: Ըստ տեղացիների հավատալիքի, նա, ով կուտի սերմը, իր կյանքը կավարտի կոկորդիլոսի ստամոքսում:

Բաոբաբի տերևները անփոխարինելի կեր են անասունների, հատկապես ձիերի համար:

Բաոբաբից պատրաստած դեղանյութերով տեղացի բժիշկները բուժում են գրեթե բոլոր հիվանդությունները:

Բաոբաբն անփոխարինելի է նաև տնտեսության մեջ: Արմատներից ստանում են կարմիր ներկ, սերմերն օգտագործում են որպես պարարտանյութ և վառելիք, իսկ մոխիրից պատրաստում են օճառ: Կեղևից պատրաստում են ամանեղեն, պարան, լարեր՝ երաժշտական գործիքների համար: Կեղևով ծածկում տանիքները:

Որոշ ցեղեր բաոբաբի հաստ բունը օգտագործում են որպես բնակարան: Ներկայումս գոյություն ունի մինչև անգամ ավտոբուսների կայանի սպասման դահլիճ, փորված կենդանի ծառի մեջ, որտեղ հանգիստ տեղավորվում է երեսուն մարդ: Որոշ երկրներում բաոբաբների մեջ փորում են բարեր, որոնց կահույքն ու վաճառասեղանները պատրաստում են նույն կենդանի ծառից:

Սուդանում բաոբաբները փոխարինում են ջրի բաքերին: Նրանց մեջ ջուրը բոլորովին չի գոլորշիանում և ամենաչորային ամիսներին պահպանում է իր թարմությունը:

Բարեբախտաբար, բաոբաբը շատ կենսունակ է: Որքան էլ որ նրա «կաշին» քերթում են, նա շատ արագ վերականգնում է իր ուժերը:



Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 5 մայիս 1968 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ՌՈԲԵՐՏ ԱՅՎԱԶՅԱՆԻ




**„Пионер“** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—68—16, 2—59—06։*

ՎՖ 06535։ Պատվեր՝ 686։ Տպաքանակ՝ 59272։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 3/V, 1968 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։ Գինը՝ 10 կ.։




1. Առանց մատիտը թղթից կտրելու գծել այս նկարը։



2. Արամը Սահակից ձախ է կանգնած, Նուբենը՝ Արամից։ Ո՞վ է մեջտեղում։



ա Բ Գ Դ

3. Այս մանրիկներից, որոնց կարելի է ցանկացած դեպքում մեծացնել և փոքրացնել, մի որևէ առարկայի նկար կազմեցեք։

4. Կարո՞ղ եք երեք րոպեում անցնել լաբիրինթոսով։








5. Օդանավի թռիչքի հետագծով գրեցեք Լ և Հ տառերը։ Միևնույն տեղով երկու անգամ անցնել չի կարելի։ Օդաչուն ցանկացած ժամանակ կարող է հետագիծ չթողնել։

6. Այս հասարակ մասնիկներից զարդանախշեր կազմեցեք։




## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

«ՊԻՈՆԵՐ» №№ 1, 2, 3

*ՄԱԹԵՄԱՏԻԿՈՍ ՈՐՄՆԱԴԻՐԸ*

```
  999990
— 99999
  ------
  899991
```

*ՈՒՄ ՔԱՆԻ ՍՈՒՆԿ ՀԱՍԱՎ* — Էդիկը հավաքեց 24 սունկ, իսկ Պետիկը՝ 9 սունկ։

*ԵՐԶԱՆԻԿ ՊԱՏԱՀԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ* — Ուսուցիչը գրատախտակին գրեց 8 թիվը։

*ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԽԱՂԲԱՌ* — 1. Ենիսեյ։ 2. Դվինա։ 3. Կարաչի։ 4. Լադոգա։ 5. Պրեսպա։ 6. Սահարա։

*ԲԱԺԱՆԻՐ ՀԱՎԱՍԱՐ ՄԱՍԵՐԻ* — Հնարամիտ աշակերտը կտրեց 16 «Г» տառ, ահա այսպես.



